## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԶԵԿՈՅՑ

Պ. Վարդան Սարգսեանի կողմէ, (Կաթողիկոսական ընտրութեան պատգամաւոր Մարսէյլի) :

Այս չարաթ օր, ժամը 20·30ին, Պաւէնթէրնասիոնալի սրահին մէջ, 230, Շըմէն տը Մատրակ Վիլ, Մարսէյլ :

Կը նախագահէ Պ. Պ. ՍԱՀԱԿԵԱՆ :

Գեղարուեստական բաժին : Մուտքը ազատ է : Կը խնդրուի ճիշդ ժամուն ներկայ գտնուիլ եւ մանուկներ չբերել :

---

Պ. Կարօ Ուշագլեան, Պ. Գէորգ Ուշագլեան, Տէր եւ Տիկին Արտաշէս Ուշագլեան եւ իրենց զաւակը, Տէր եւ Տիկ. Յարութիւն Ուշագլեան եւ իրենց զաւակը, Այրի Տիկին Մանուէլեան եւ զաւակները (Նիւ Եորք), Այրի Տիկին Արմենուհի Սուրէնեան եւ զաւակը (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Սահակ Մանուկեան եւ իրենց զաւակը (Նիւ Եորք), Օր. Օր. Շողիկ, Անահիտ եւ Տիգրան Թէրզեան (Քալիֆորնիա), եւ համայն պարագաները ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, հարսին, ներոջ, քրոջ եւ մօրաքրոջ՝

### ՏԻԿ. ԱՂԱՒՆԻ Կ. ՈՒՇԱԳԼԵԱՆԻ

(Ծնեալ Մոմճեան, Կարնեցի)

մահը որ տեղի ունեցաւ յետ երկարատեւ հիւանդութեան :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի չարաթ ժամը 15·30ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փանթէնի գերեզմանատունը, ընտանեկան դամբարանը :

Կը խնդրուի ծաղկեպսակ չղրկել :

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

---

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Փարիզէն Տիկին Հռոփ Գրիգորեան փոխան ծաղկեպսակի հինգ հազար ֆր. կը նուիրէ ողբացեալ այրի Տիկին Նեկտար Գոչունեանի մահուան առթիւ, յատկացնելու համար տեղւոյս աղքատներուն :

Ալֆորվիլի Ս. Պ. Պ. Եկեղեցւոյ Հոգաբարձութիւն

---

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Շքեղ պարահանդէս կազմակերպուած Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի կողմէ, հովանաւորութեամբ տեղւոյս եկեղեցւոյ Թաղական խորհուրդին : 4 Դեկտ. 1955, ժամը 15–23 : Սալ Կալմանի մէջ :

### ՑԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շաւիլի մէջ Դեկտեմբեր 11ին, կիրակի օրը, կազմակերպուած Կապ. Խաչի եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի մասնաճիւղերուն կողմէ :





IMPRIMERIE ARAXES 46, Rue Richer. Paris

---

**Salle Chopin - 252, Fg. St. Honoré**

**RECITAL de PIANO**

## Ե Լ Ե Ն Ա   Գ Ի Ւ Տ Ե Ա Ն

**ՇԱԲԱԹ 26 ՆՈՅԵՄԲԵՐ, ԺԱՄԸ 21ԻՆ**

Կազմակերպութեամբ « ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՕԺԱՆԴԱԿՈՂ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ

ՅԱՅՏԱԳԻՐ՝ Պէթօվըն, Շուման, Շօփէն, Ռաքմանինօֆ

**ԵՒ Ա. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ**

Յայտագրին մեծագոյն բաժինը նուիրուած է Խաչատուրեանի գործերուն :

ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆ 600, 400, 300 ֆրանք :

---

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍ

ՎԻԷՆԻ ՄԷՋ

Այս կիրակի, կէսօրէն վերջ ժամը 2·30ին Ամիքալ Լայիքի ընդարձակ սրահին մէջ, Մօնթէ Սէն Մարսէլ :

Կը ներկայացուի «ԽՂՃԻ ԶՈՀԵՐԸ» ողբերգ. հինգ արար, ղեկավարութեամբ եւ դերակատարութեամբ Պ. Ս. Քէփէնկեանի : Այս առթիւ՝ Մարսէյլի Համազգայինի վարչութիւնը իր ամբողջական կազմով ներկայ կ'ըլլայ :

Կը բանախօսէ Պ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ :

---

### ԶԵԿՈՒՑՈՒՄ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս կիրակի ժամը 3ին, ռիւ ժէ, Սէն Լուիի սրահի մէջ, պիտի զեկուցանէ Լիոնի կաթողիկ. պատգամաւոր, Աղ. Կիւլպէնկեան, էջմիածնայ կաթողիկոսական ընտրութեան, միւռոնի օրհնութեան, եպիսկոպոսներու ձեռնադրութեան եւ Հայաստանի վերաշինութեան մասին :

Կը խնդրուի հայրենակիցներէն ներկայ ըլլալ :

---

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Անիէռի խումբին, այս կիրակի, ժամը 15էն 23, ընկերվարականներուն սրահը, 149պիս, Ավընիւ տ'Արժանթէօյ : Կը հրաւիրուին բոլոր քոյր մասնաճիւղերը, ինչպէս նաեւ բոլոր համակիրները :

---

### Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ – ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑԻ

Այս կիրակի առաւօտ, քառաձայն պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին :

Կը հրաւիրուի Փարիզի հաւատացեալ ժողովուրդը :

---

### ԹԷՅԱՍԵՂԱՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ

Համազգայինի վարչութիւնը կազմակերպած է թէյասեղան մը, որ տեղի պիտի ունենայ այս կիրակի ժամը 16ին, սրճարան Քառէի վերնայարկը (մէթրօ Քառէի ճիշդ դէմը) : Ներկայ պիտի ըլլայ Համազգային Մշակութային Ընկերութեան Կեդր. վարչութեան ատենապետ՝ Բժիշկ Գօնեալեան : Կը հրաւիրուին անդամները եւ համակիրները :

Ծախքերու մասնակցութիւն :

---

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ամասիոյ Հայր. Միութեան (Մարսէյլ) կողմէ :

Պատուակալ նախագահութեամբ Պ. Գ. Յ. Սիմոնեանի (Կիպրոսէն) :

Կիրակի, 27 Նոյեմբեր, ժամը 15էն մինչեւ կէս գիշեր Սալօն Նորմանտիի շքեղ սրահին մէջ :

Զուարթ անակնկալներ, քոթիյոն, գեղեցիկ աչքի մրցում ներկաներու մէջ :

Սպանիական երգ եւ պար քասթանիէթով, 7 հոգինոց զուարթ նուագախումբ ՓՕԼ :

Առատ պիւֆէ մատչելի գիներով :

Սեղանները սահմանափակ ըլլալով, կանխաւ ապահովել Պ. Տ. Զօրիկեանէ՝ 5 Ավընիւ Քամիյլ Փէլըթան :

Տիկին Արփինէ Մուրճիկեանէ՝ 43, Ռիւ Թափի Վէր :

Պ. Յ. Չէքիմեանէ՝ 12 ռիւ տը լ'Արք, հեռ. Փրատօ 78–61 :

---

### ԾԱԽՈՒ Է

Մեկնումի պատճառով նոր

Surjeteuse Standard Maser Spécial

Դիմել՝

Tavitian, 13, rue Civiale, Paris (10)

---





---

### ԺԱՆԻՆ ԳՈՉԵԱՆ

### ՎԱՀԱՆ ՔԷՇԻՇԵԱՆ

(Ատամնաբոյժ)

(Նշանուած)

Մէօտօն, 20 Նոյ. 955 Իսի

---

### ԲԱՑԱՌԻԿ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. Կեդր. Կոմիտէն բացառիկ ընդհ. ժողովի կը հրաւիրէ.

Վիէն, այս չարաթ ժամը 21ին :

Լիոն եւ Տէսին, այս կիրակի ժամը 21–ին, 101 Ավընիւ տը Սաքս :

ԺՈՂՈՎՆԵՐԸ ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՆ ՍՈՎՈՐԱԿԱՆ ՀԱՒԱՔԱՏԵՂԻՆԵՐԸ : Կը զեկուցանէ՝

ԸՆԿ. ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

---

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

★

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. խումբի ժողովը այս չորեքշաբթի ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս չարաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

ԶԱՒԱՐԵԱՆ ենթ.ի ընկերները՝ այս չաբաթ իրիկուն սովորական տեղը :

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբի ընկերները՝ այս կիրակի, կէսօրէն վերջ ժամը 3ին :

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթ.ի ընկերները այս կիրակի, կէսօրէ վերջ, Ա. Ահարոնեանակումբը :

ՎՌԱՄԵԱՆ ենթ.ի ընդհ. ժողովը՝ կիրակի 4 Դեկտ., սովորական տեղը :

Բացականները նկատի կ'առնուին, ներկայանալ անդամատետրերով :

Այս ժողովներուն ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի եւ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները :

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի վարչութիւնները եւ ընկերուհիները, այս երկուշաբթի ժամը 3·30ին, Ռէժան սրճարանը, մեթրօ Քառէ :

ԱՆԻԷՌ · ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Ֆ. Կապ. Խաչի ժողովը այս երկուշաբթի, ժամը 16ին, սովորական հաւաքատեղին :



### Կ'ՈՒԶՈՒԻ

Տան մէջ աշխատող վստահելի կին մը : Ճաշ, բնակարան, վճարուելիք ամսական : Նախընտրելի է առանձին կին մը :

Դիմել՝ Ա. ՀԱՄԱԼԵԱՆԻ,

68, Rue Nationale, Marseille

Tél. Co. 33-22

ԺԸՆԵՒԻ մէջ սկսած են պատրաստել ծրագիր մը, որուն հիման վրայ եւրոպական մէկ երկրէն ուրիշ մը կառքով անցնող ճամբորդներուն պիտի տրուին մաքսային ամէն տեսակի դիւրութիւններ :

ՓԱՐԻԶԻ շրջանի շարժապատկերի սրահներու պաշտօնեաները որոշած են գործադուլ յայտարարել Կիրակի օրը : Կը պահանջեն վճարումներու յաւելում :

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ շարժապատկերի պատուիրակութիւն մը հասաւ Փարիզ, Երկուշաբթիէն սկսեալ «Ռուսական Շարժապատկերի Օր»ուան բացումը կատարելու համար : Պատուիրակութիւնը բաղկացած է Մշակոյթի փոխ-նախարար Վլատիմիր Սուրինի նախագահութեան տակ գտնուող 17 արուեստագէտներէ :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հ. Մ. Ը. Մ.ի հիմնադրութեան 38րդ ամեակին առթիւ Ֆրանսայի Շրջ. վարչութիւնը կը հրաւիրէ իր բոլոր անդամները եւ համակիրները, ներկայ գտնուիլ այս կիրակի առաւօտ Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, ուր Ժան Կուժօն, յետ պատարագի կատարուելիք հոգեհանգստեան պաշտօնին, ի յարգանս Միութեան վախճանեալ հիմնադիրներուն յիշատակին :

***

Կեսարիոյ եւ շրջակայի հայրենակիցներուն փափաքին համաձայն, 1895 Նոյ. 18ի Կեսարիոյ եւ շրջակայի նահատակներուն, ինչպէս նաեւ 1915ին Կեսարիոյ մէջ կախաղան հանուած 53 մարտիրոսներուն, ընդհ. տեղահանութեան զոհերուն, բազմավաստակ առաջնորդ Տրդատ արք. Պալեանի եւ նահատակ Խոսրով եպիսկ. Պեհրիկեանի յիշատակին հոգեհանգիստ պիտի կատարուի այս կիրակի 27 Նոյեմբեր, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ: Կը հրաւիրուին Կեսարիոյ եւ շրջանի բոլոր հայրենակիցները :

## ՀԱՅ — ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Թիւ 167 – 8 (Նոյ. – Դեկտ.) 48 էջ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ.— Բառարան ոտանաւոր: Մեղուն եւ իր մեղրը (Տոքթ. Այվազեան).— Առաջնորդ Թոքախտին դէմ (Ն.).— Բժշկութիւնը երէկ եւ այսօր (Տոքթ. Սերոբեան).— Մննդառութեան գիտութիւնը (Տոքթ. Գալուստեան).— Կրիփ (Տոքթ. Ղազարեան). — Սեռային հիւանդութիւններ (Տոքթ. Պ. Միսաքեան).— Բժշկութիւն Թանկագին քարերով: Հակաճառութեան սխալ (Քաղիան).— Արգնի (Միրաքեան). — Հաւկիթ (Շ. Նարդունի).— Արտաքին գործոց նախարարութիւն (Տոքթ. Շ. Օճառ).— Հարբուխ (Տոքթ. Աշնեան). — Ի փառս կաղամբին (Ազատանի). — Առողջապահութիւնը անհրաժեշտ (Բժշկապետ Քօլօլեան).— Խլիրդը երկրէ երկիր:

Բաժանորդագրութիւն՝ տարեկան 1000 ֆրանք, (արտասահման՝ 1200 ֆրանք) : Դիմել . Նարդունի, 32 Ռիւ տը Թրէվիզ, Փարիզ (9) :



## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին դասախօսութիւնները միշտ տեղի կ'ունենան չորեքշաբթի օրերը, Քաֆէ Քառէի սրահը, ժամը 21ին :

Այս չորեքշաբթի պիտի խօսի ծանօթ դասախօս, Պ. Օհան Կարապետեան : Նիւթ ունենալով «Արդիական խորհողութեան հիմերը» :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ.— Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է ընկերուհի Բոլանտ Պարխեանէ հինգ հարիւր Փր. իր ապաքինման առթիւ, ընկերուհի Լուսաբեր Տօլմաճեանէ հինգ հարիւր Փր. իր զաւկին ապաքինման առթիւ:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Տէր եւ Տիկին Դարբինեանէ երկու հազար ֆրանքի նուէր մը: Տէր եւ Տիկին Վ. Յովհաննէսեանէ հազար ֆրանք իր զաւկին նշանախօսութեան առթիւ: Շնորհակալութիւն նաեւ Տէր եւ Տիկին Տէր Եղիազարեանի որոնք միշտ կ'օգնեն մեր բարենպատակ ձեռնարկներուն :

ԻՍԻ.— Խրիմեան դպրոցի հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացած է Պ. Սարգիս Եղիազարեանէ հազար Փր. իր կնոջ ողբացեալ Եղսայի մահուան առթիւ, ինչպէս եւ նոյն առթիւ 500 ֆրանք Պ. Զատիկ Զատիկեանէ :

Տէր եւ Տիկին Թ. Գալիկեան երկու հազար ֆրանք կը նուիրեն Խրիմեան դպրոցի 25ամեակի առթիւ, իսկ Տէր եւ Տիկին Առաքել Սերոբեան չորս պարկ ածուխ կը նուիրեն :



## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Կարտանի «Նիկոլ Դուման» խումբը, իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ այրի Տիկին Աստղիկ Պետրոսեանի եւ զաւակներուն, Պ. Մանուկ Պետրոսեանի, Պ. Պետրոս Պասմաճեանի եւ համայն ազգականներուն եւ բարեկամներուն ընկեր Կարապետ Պետրոսեանի կսկծալի մահուան առթիւ, եւ անոր յիշատակին հազար Փր. կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման համար :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ծքեղ պարահանդէս կազմակերպուած Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի կողմէ, հովանաւորութեամբ տեղւոյս եկեղեցւոյ Թաղական խորհուրդին: 4 Դեկտ. 1955, ժամը 15–23: Սալ Կալմանի մէջ :

ՅԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շաւիլի մէջ Դեկտեմբեր 11ին, կիրակի օրը, կազմակերպուած Կապ. Խաչի եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի մասնաճիւղերուն կողմէ :



## — ՑՈՒՇԱՏԵՏՐ —

★

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի դասախօսական ժողովը այս եռեքշաբթի ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռաս. խումբի ժողովը այս չորեքշաբթի ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէն՝ կիրակի 4 դեկտ., սովորական տեղը:

Բացակաները նկատի կ'առնուին, Ներկայանալ անդամատետրերով :

Այս ժողովին ներկայ կ'ըլլան Կեդր. Կ.ի եւ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները :

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի վարչութիւնները եւ ընկերուհիները, այս երկուշաբթի ժամը 3.30ին, Ռէժան սրճարանը, մեթրօ Քառէ:

ԱՆԻԷՌ . ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Ֆ. Կապ. Խաչի ժողովը այս երկուշաբթի, ժամը 16ին, սովորական հաւաքատեղին :

## ԹԷՅԱՍԵՂԱՆ ՀԱՄԱԶԳԱՅՆԻ

Համազգայինի վարչութիւնը կազմակերպած է թէյասեղան մը, որ տեղի պիտի ունենայ այս կիրակի ժամը 16ին, սրճարան Քառէի վերնայարկը (մէթրօ Քառէի ճիշդ դէմը): Ներկայ պիտի ըլլայ Համազգային Մշակութային Ընկերութեան Կեդր. վարչութեան ատենապետ՝ Բժիշկ Գօնեալեան: Կը հրաւիրուին անդամները եւ համակիրները:

Տախքերու մասնակցութիւն :



IMPRIMERIE ARAXES 46, Rue Richer. Paris

## ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐ ՆԻԿՈՍԻԱՅԻ ՄԷՋ

Նիկոսիայի աշխատաւորներու ընկեր–վարական Միութիւնը վաւերացուց մա–րեշալ Թիթոյի տնտեսական նոր ծրագի–րը, որուն համաձայն գործ պիտի տրուի թեթեւ արդիւնաբերութեան, այսինքն ըն–թացիկ ապրանքներու ճարտարարուես–տին։ Պիտի կրճատուի ծանր արդիւնա–բերութիւնը։

Տրուեցան նաեւ ուրիշ երկու կարեւոր որոշումներ.— Ա) Քաղաքական յանցա–ւորները ներման պիտի արժանանան։ Բ) Տեղեկատու նախարարութիւն մը պիտի հաստատուի, որուն պաշտօնը պիտի ըլ–լայ մամուլի եւ ձայնասփիւռի միջոցաւ լուսաբանել պետական հաստատութեանց գործունէութիւնը։

Այս որոշումները քաղաքական հիմք չունին. աւելի շատ կը վերաբերին ներ–քին քաղաքականութեան եւ կը ձգտին ժո–ղովուրդին կենցաղը բարձրացնելու։

× Պատերազմէն ի վեր առաջին անգամ ըլլալով Նիկոսիան պիտի ունենայ բա–նակի զօրավար մը։

× Մարեշալ Թիթօ Եգիպտոս պիտի այ–ցելէ մօտերս։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿԻՊՐՈՍԻ խնդիրը նորէն յուզուեցաւ Անգլիոյ Երեսփ. Ժողովին մէջ, Բշ. օր։ Գաղթային Նախարարը յայտարարեց թէ կառավարութիւնը «չինարար լուծում մը» կը փնտռէ, հակառակ պաշարման վիճա–կի յայտարարութեան։ Ընդդիմադիրները հարցապնդումներ կ'ուղղեն անդադար։ Միացման պայքարին ախոյեանը, Մակա–րիոս արք. որ Յունաստան գացած էր, Կիպրոս վերադարձաւ։— Ընդհ. հրամա–նատարը, մարեշալ Հարտինկ, պատերազ–մական վիճակի մէջ դրաւ զօրքը։ Զին–ուորները առժամապէս ենթակայ են զոր–ծօն ծառայութեան։

Վերջին տեղեկութեանց համաձայն 12 հազար անգլ. զինուորներ համախմբուած են Կիպրոսի մէջ։

ՄՈՍԿՈՒԱՅԻ թերթերը կը գրեն թէ մեծ փոփոխութիւններ պիտի կատարուին Ուկրայնայի հողագործական կազմակեր–պութեան մէջ։ Արդէն իսկ փոխուած 5986 նախագահներ՝ հողագործական տն–տեսութեանց մէջ։ Վերջին երկու տարի–ներու ընթացքին 33.000 նոր կուսակցա–կան գործիչներ նշանակուած են։ Հարկ եղած է նորէն ցանել խնը միլիոն արտա–վար տարածութեամբ հող, անհրաժեշտ արմտիքը ճարելու համար։

ԾԱՆՕԹ երաժշտագէտ Օնեկեր յան–կարծամահ եղաւ կիրակի գիշեր իր բնա–կարանին մէջ։ Զուիցերիացի էր եւ 63 տարեկան, հեղինակ բազմաթիւ ստեղ–ծագործութեանց։ Երաժշտական գործեր պատրաստած է նաեւ շարժանկարի հա–մար։

ՖԵՄԻՆԱՅԻ գրական մրցանակը երկու–շաբթի օր տրուեցաւ փիլիսոփայութեան դասախօս եւ վիպագիր Անտրէ Տոթէլի։ Անակնկալ մը չէր այս ընտրութիւնը։ 11 ձայնի վրայ եօթը ձայն առաւ Տոթէլ, մէկ ալ Վահէ Քաչա։ Մրցանակի արժա–նացող գիրքն է՝ «Երկիրը ուր երբեք չենք հասնիր»։

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ելմտական նախարարը յայտարարեց թէ կառավարութիւնը որո–շած է պաշտօնանկ ընել Յունաստանի եւ Աթէնքի Ազգ. Դրամատան տնօրէնը։ Այս վերջինը կարգ մը դրամական յանկա–ցումներ ըրած էր անհատներու՝ ի վնաս արդիւնաբերական խմբակցութեանց։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

# Անդաստան

Պարբերական Գրականութեան եւ Արուեստի (Թիւ 5)

Ֆրանսայի եւ արտասահմանի հայ գրա–կանութեան լաւագոյն էջերը ներկայաց–ուած են խնամքով ու գեղարուեստական տպագրութեամբ։ Բազմաթիւ նկարներ հայ արուեստագէտներու գործերէն։

150 էջ։ Գին 600 ֆր.։ Հասցէ՝ Տպարան ԱՐԱՔՍ . 46, Րիւ Րիշէ – Փարիզ (9րդ)։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՑԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շաւիլի մէջ Դեկտեմբեր 11ին, կիրակի օ–րը, կազմակերպուած Կապ. Խաչի եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի մասնաճիւղերուն կողմէ։



## ՀԱՅ — ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Թիւ 167 – 8 (Նոյ. – Դեկտ.) 48 էջ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ.— Բառարան ո–տանաւոր։ Մեղուն եւ իր մեղրը (Տոքթ. Այվազեան).— Առաջնորդ Թոքախտին դէմ (Ն.).— Բժշկութիւնը երէկ եւ այ–սօր (Տոքթ. Սերոբեան).— Աննդառու–թեան գիտութիւնը (Տոքթ. Գալուստ–եան).— Կրիփ (Տոքթ. Ղազարեան).— Սեռային հիւանդութիւններ (Տոքթ. Պ. Միսաքեան).— Բժշկութիւն Թանկագին քարերով։ Հակաճառութեան ախտը (Քաղիան).— Արգնի (Միրաքեան).— Հաւկիթ (Շ. Նարդունի).— Արտաքին գործոց նախարարութիւն (Տոքթ. Շ. Օ–նտո).— Հարբուխ (Տոքթ. Աշնեան).— Ի փառս կաղամբին (Ազատեան).— Ա–ռողջապահութիւնը անհրաժեշտ (Բժշկա–պետ Քօլօլեան).— Խլիրդը երկրէ երկիր։

Բաժանորդագրութիւն՝ տարեկան 1000 ֆրանք, (արտասահման՝ 1200 ֆրանք)։ Դիմել . Նարդունի, 32 Ռիւ տը Թրէվիզ, Փարիզ (9)։



## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին դասախօսութիւնները միշտ տեղի կ'ունենան չորեքշաբթի օրերը, Քաֆէ Քասէլի սրահը, ժամը 21ին։

Այս չորեքշաբթի պիտի խօսի ծանօթ դասախօս, Պ. Օհան Կարապետեան։ Նիւթ ունենալով «Արդիական խորհրդա–թեան հիմերը»։

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Ազքատախնամի պարահանդէսին ՄԱՆԿԵՆ տունի տոմսը շահողէն (Bon pour une robe de Manguin) կը խնդրուի անյապաղաբար ներկայանալ ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ վարչութեան ամէն օր ժամը 14.30էն 18, 32 ռիւ տը Թրէվիզ։

Վերջին պայմանաժամ Դեկտ. 10։




Օր. ԺԱՆԻՆ ԳՈՋԵԱՆ
Պ. ՎԱՀԱՆ ՔԷՇԻՇԵԱՆ
(Ատամնաբոյժ)
Նշանուած


Մէօտոն, 20 Նոյ. 955 Իսի

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

★

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. խումբի ժո–ղովը այս չորեքշաբթի ժամը 9ին, սովո–րական հաւաքատեղին։

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէն՝ կի–րակի 4 դեկտ., սովորական տեղը։

Բացակաները նկատի կ'առնուին, Ներ–կայանալ անդամատետրերով։

Այս ժողովին ներկայ կ'ըլլան Կեդր. Կ.ի եւ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչ–ները։

## ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՐՄԻՆ

Տէր եւ Տիկին Գալօ Մոսոխչեան տասը հազար ֆրանք կը նուիրեն Որբերու Օգ–նութեան մարմնին, իրենց հօր՝ Տոքթ. Մութաֆեանի մահուան առթիւ (Պոլիս)։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կը փնտռուի Գուրգէն Գարոյեան, Երե–ւանցի։ Լուր ունեցողներէն կը խնդրուի յայտնել «Արմենիա»յին։
El Salvador, 4627, Buenos Aires, Argentine



IMPRIMERIE ARAXES 46, Rue Richer. Paris